## Վարչապետ Պ. Փլէվէնի ճառը

ԶԻՆ. ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԸ 18 ԱՄԻՍ

Վարչապետ Պ. Փլէվէն Սթրազպուրկի մէջ ճառ մը խօսելով յայտարարեց ի միջի այլոց, որ զինուորական պարտաւորիչ ծառայութեան շրջանը Ֆրանսայի մէջ պէտք է բարձրացուի 18 ամսուան: Այս իմաստով օրինագիծ մը պիտի ներկայացուի խորհրդարանին, երբ այս վերջինը վերսկսի իր աշխատանքներուն յառաջիկայ ամիս: Այս բարձ-րացումով, Ֆրանսա Եւրոպայի մէջ պիտի կրնայ գործօն ծառայութեան մէջ պահել 20 զօրաբա-ժիններ, որոնց կազմակերպութիւնը ստանձնած է ան Ատլանտեանի դաշինքով: «Ֆրանսայի վերա-զինումը, ըսաւ վարչապետը, պիտի արագացուի մինչեւ իսկ ի գին մեծ զոհողութեանց: Այսպէսով պիտի կրնանք Ֆրանսան անգամ մըն ալ զինուո-րական մեծ ուժ մը դարձնել»:

Իր ճառին մէջ, վարչապետը անդրադարձաւ նաեւ համայնավար 5րդ զօրասիւնի գործունէու-թեան եւ ըսաւ որ միջոցներ ձեռք պիտի առնուին, բայց ոչ թէ մենատիրական բնոյթով:

Ակնարկելով՝ «նախազգուշական պատերազ-մի» մը մասին Ամերիկայի մէջ խօսուած վերջին ճառերուն, որոնք խռովեցին ֆրանսական հանրա-յին կարծիքը, Պ. Փլէվէն ըսաւ.— «Ինչպէս որ չենք կրնար խաղաղութիւնը պահպանել պատե-րազմի նախաձեռնութիւնը ստանձնելով, այնպէս ալ կարելի չէ ազատութիւնն ու ժողովրդապե-տութիւնը պաշտպանել, անոնց սկզբունքներն ու օրէնքները ոտնակոխելով»:

Վարչապետը համաձայն է, որ զօրացուի Ա-րեւմտեան Գերմանիոյ ոստիկանական ուժը, որ-պէսզի կարենայ դիմագրաւել Արեւելեան Գերմա-նիոյ մէջ կազմուած «ժողովրդական բանակ»ի պատահական վտանգը:

Ի վերջոյ անիկա ըսաւ, որ կառավարութիւնը ամէն կարելի միջոց ձեռք պիտի առնէ զսպելու համար գիներու բարձրացումը, բայց աւելցուց, որ սխալ են բաժնեչափային դրութիւնը վերահաս-տատելու մասին տարածուած զրոյցները: «Մեր արտադրութիւնը, յայտարարեց ան, իր բարձրա-գոյն մակարդակին հասած է մեր պատմութեան մէջ: Շատ մը ուտեստեղէններ եւ ճարտարար-ուեստական արտադրութիւններ ոչ միայն կը բա-ւարարեն մեր կարիքները, այլեւ կը գերազանցեն զանոնք»:

---

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՌՈՒՄԱՆԻՈՅ մէջ հազարաւոր Հրեաներ ձեր-բակալուելով պարտաւորիչ աշխատանքի կեդրոն-ները ղրկուեցան: Պատճառը այն է որ անոնք փա-փաքեր էին թողուլ համայնավար «դրախտը» եւ երթալ Իսրայէլ: Ոմանք ազատ արձակուեցան փրկագինը վճարելէ վերջ: Բայց փրկագինը տո-լարով ըլլալուն հետեւանքով, շատ քիչ միայն կր-ցան օգտուիլ անկէ: Ռումէն համայնավար կառա-վարութիւնը Ռուսիա կ՚ըղրկէ եղեր բոլոր տաղան-դաւոր հրեայ մանուկները, յաճախ նոյնիսկ ա-ռանց ծնողներու գիտակցութեան:

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ արհեստակցական միութեանց դաշնակցութեան որոշումով գործա-դուլները արգիլուեցան: Բանուորները գործադուլ կրնան ընել միայն դրամատիրական մասնաւոր գործարաններու մէջ:

ՉԻՆ ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ձայնասփիւռի կայանը կը տեղեկացնէ, թէ ամերիկեան օդանաւերը ան-գամ մըն ալ ռմբակոծած են չինական հողերը, ինչպէս նաեւ ռումբեր նետած են չինական երկու-շոգենաւերու վրայ Եալու գետին մէջ (Քորէա-մանչուրիական սահման):

ՄԻԱՑԵԱԼ Նահանգներու ելմտական նախա-րարը Պ. Սնայտըր Փարիզ ժամանեց Քոնկրէսի 13 անդամներուն հետ միասին, Միջազգային դրամա-տան տարեկան 5րդ համաժողովին մասնակցելու համար:



### ԳԻՆԵՁՕՆ Ի ՊԱՏԻՒ ԸՆԿԵՐՆԵՐ
### ԲԺ. Ե. ԽԱԹԱՆԱՍԵԱՆի և Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆի

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթա-կոմիտէն ընկերահամակրական գինեձօն մը կազ-մակերպած է, ի պատիւ ընկերներ Բժ. Ե. Խա-թանասեանի եւ Ս. Տէր Թովմասեանի, այսօր, երեքշաբթի երեկոյեան ժամը 8ին Ահարոնեան ա-կումբը 26 rue des Convalescents:

### ԺՈՂՈՎ ՎԻԷՆԻ ՄԷՋ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս հինգշաբթի իրիկուն ժամը 8·30ին «Օհանջանեան» ակումբը:

Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտա-ւորիչ է: Ճշդապահ ըլլալ:

Սոյն ժողովին ներկայ պիտի ըլլան ընկերներ ԲԺ. Ե. ԽԱԹԱՆԱՍԵԱՆ եւ Ս. Տ. ԹՈՎՄԱՍԵԱՆ:

### Ֆ. Կ. ԽԱՉԻ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆԻ

ՓԱՐԻԶԻ խումբը կը հասնի Gare de Lyon, երեք-շաբթի 5 Սեպտեմբեր, առաւօտեան ժամը 8ին,

### ՀՐԱՒԻՐԱԳԻՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Հայկական Բարեգործական Ընդհ. Միութեան իրաւասու անդամներէն կը խնդրուի ներկայ գտ-նուիլ ընկերութեան Լէ տարեկան ընդհ. ժողովին, որ պիտի գումարուի շաբաթ օր, 11 Նոյեմբեր, ա-ռաւօտեան ժամը 9·30ին, Միութեան կեդրոնական գրասենեակին մէջ, 295 Fifth Avenue, New York, N. Y.: Միեւնոյն ատեն կը ծանուցուի թէ, վերոյիշ-եալ թուականին օրինական մեծամասնութիւն չգոյանալու պարագային, ներկայս պիտի նկատ-ուի իբր հրաւէր ու ըստ այնմ ժողովը պիտի գու-մարուի Նոյեմբեր 25ին եւ 26ին, շաբաթ եւ կիրա-կի օրերը, ժամը 9·30ին, Hotel Statler, 7th Avenue and 33rd Street, New York:

Օրակարգ.— Ընդհ. տեղեկագիր 1949 տարե-շրջանի, ընդհ. հաշուետուութիւն 1949 տարեշր-ջանի, ընտրութիւն կեդր. վարչ. ժողովի վիճա-կաւ դադարեալ անդամներու տեղ, կանոնագրի բարեփոխման խնդիր, առաջարկներ եւ թելա-դրութիւններ եւ ուղերձներ:

Ի դիմաց կեդր. վարչ. ժողովի ատենադպիր՝ Մ. Մ. Յովսէփեան, ատենապետ՝ Ա. Գարակէօզ-եան:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Գրիգոր Թովմասեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Լիոնի Հայոց ե-կեղեցին, 69 rue Louis Blanc, իրենց կնոջ եւ մօր

ՏԻԿԻՆ ՄԵԼԻՆԷ ԹՈՎՄԱՍԵԱՆի

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յար-գողները:

### ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԾԱԽՈՒԷ

Շենէի մէջ (Chesnay, S. et O.) հող մը, 310 մեթր: Դիմել Օր. ՍԵԴԱ ՎՐԱՑԵԱՆի, 247 Bld. Jean Jaurès, Boulogne (Seine):



Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme – (13)
Le Gérant : A. NERCESSIAN

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժո-ղովը այս երեքշաբթի իրիկուն ժամը 20·30ին, Chope du Nordի մէջ:

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Էրզրումի Քան գիւղացի Վարդանուշ Շահնարեան կը փնտռէ իր հօրեղբօր տղան՝ Ներսէս Շահնարեանը, որ 1924ին Յու-նաստանէն մեկնած է Ամերիկա: Կը խնդրուի ի-մացնել Վարդանուշ Ադամեանի, 7 rue Danton, Décines (Isère) France:

Ջերմապէս կը խնդրուի Ամերիկայի «Հայ-րենիք»էն եւ «Ասպարէզ»էն արտատպել այս փն-տռտուքը:

ՎԵՐԱԲԱՑՈՒՄ.— Ֆր. Կ. Խաչի Տէսինի դպ-րոցը կը վերաբացուի այս երկուշաբթի, Սեպ-տեմբեր 4ին: Արձանագրութիւնները կ՚ընդունուին Հ. Յ. Դ. Տան մէջ ամէն օր՝ երեկոները, ժամը 16 — 19:

### Կ'ՈՒԶՈՒԻ

Աթըլիէի մէջ աշխատող մէքանիսիէն կին մը: Դիմել Ste. LYDA, 21 rue des Petits Carreaux, Paris (2), Tél. Cen. 69-72, métro Sentier:



ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE

**HARATCH**

Fondé en 1925
R. C. S. 376.286

**Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN**

17, Rue Damesme — PARIS (13)

Վեցամս. 800 ֆր., Տար. 1600, արտ. 2500 ֆր.

Tél. GOB. 15–70 Գին 7 ֆր. C.C.P.Paris 1678–63

Mardi 12 Septembre 1950 Երեքշաբթի 12 ՍԵՊՏԵՄԲ.

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6252–Նոր շրջան թիւ 1663

Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


ՄԵՐ ԽՕՍՔԸ

# ՄԵՐ ՀՈԳԵՐԸ ՄԵԶԻ ԿԸ ԲԱՒԵՆ

Ահա նորէն աշուն:

Այս այն եղանակն է ուր գիւղացին կ'ամբարէ ամրան բերքը, իրեն եւ բոլորին համար: Եւ կը պատրաստուի նոր հերկին ու ցանքին, ինչպէս ամէն տարի:

Անշուշտ հետզհետէ աւելի ամփոփուելով. քանի որ աշուն է, եւ ապա ձմեռ:

Գիւղացի չմնաց մեր աշխարհացրիւ բազմութեանց մէջ, եթէ չհաշուենք Միջին Արեւելքի կարգ մը շրջանները:

Դարձանք ոչ միայն ցիրուցան տարագիր, այլեւ «քաղքցի», միջազգային իմաստով:

Երբեմնի գիւղացին բանուոր է այսօր, օտարութեան մէջ: Եւ կամ արհեստաւոր ու առեւտրական:

Յետոյ կան միւսները,— անոնք որ կը հետեւին ազատ արուեստներու:

Աշուն է նաեւ ասոնց համար: Շրջան ամփոփուելու, ամառնային յոգնութիւններէն կամ արձակուրդներէն վերջ:

Կ'ուզէինք հաւատալ թէ ամառը ծառայեց կազդուրուելու ոչ միայն մարմնով, այլեւ մտքով:

Ուրեմն, արդար է քիչ մը աշխուժացում սպասել աշնան — վերամուտ — մտաւոր թէ հանրային գործունէութեան մէջ: Ոչ միայն կեդրոնացեալ, շինարար աշխատանք, այլեւ վերանորոգիչ, քննական ոգի:

Մանաւանդ որ, ահա նորէն կը գտնուինք խորապէս վրդովիչ հեռանկարի մը առջեւ:

Նորէն մութ խաչուղիներ կը բացուին ամբողջ մարդկութեան, հետեւաբար եւ մեզի համար: Ասդին թէ անդին:

Որքան փոքր եւ անճար, այնքան աւելի ենթակայ փորձութեան: Աշխարհի բոլոր ճամբաներուն վրայ: Նոյնիսկ հայրենիքին մէջ:

Ոչ վայրերան կանչեր, ոչ ալ չոնդալից կամ աւետաբեր գուշակութիւններ:

Պարզապէս նոր փորձ մը լրջութեան եւ ինքնամփոփ, տոկուն եւ յարատեւ աշխատանքի:

Երբ հսկայական ուժեր ասպարէզ կը կարդան փոխադարձաբար, սաստկացնելով զինարշաւը եւ ուրիշ չարաշուք պատրաստութիւններ, արդէն զանգ մը հնչած կ'ըլլայ փոքր ժողովուրդներուն համար:

Այդ զանգը մարտակոչ մը չէ անպատճառ: Կը նշանակէ նաեւ կոչ արթնութեան եւ իմաստութեան.

— Ի՞նչ ընել որ ոտքի տակ չերթանք:

Այս հոգը ունէինք երէկ: Վաղը կրնանք ունենալ շատ աւելի ահաւոր անակնկալներով:

Ուրեմն պէտք ըլլանք արթուն եւ կորովամիտ, մեր ներքին ուժերը եթէ ոչ բազմապատկելու, գոնէ անվթար, առողջ պահելու համար:

Պարագաները կը պահանջեն օրուան դէպքերը դատել սեփական աչքերով: Բաց աչքերով, եւ ոչ թէ փոխ տրուած ակնոցներով, որոնք դուռ կը բանան սնամէջ մարզանքներու:

Պարագաները կը թելադրեն զգուշանալ այն բոլոր արարքներէն որ կրնան կազմալուծել գաղութներու ինքնապաշտպանութեան կորովը: Կամ եղբայր եղբօր դէմ հանել: Կամ թիւրիմացութիւններ ստեղծել մեր բնակած երկիրներուն մէջ:

Մեր հոգերը մեզի կը բաւեն:

Ա՛յս մտահոգութեամբ տոգորուած են մեր շարքերը եւ ուղեկիցները:

Ատոր համար ալ, կը ջանան նոր նուաճումներ կատարել, երիտասարդացման ճամբով:

Նոյն մտահոգութենէն չեն կրնար խուսափիլ միջանկեալ կամ «բոլորտիքեան» հոսանքները, անկախ կոչուին թէ չէզոք:

Անոնք ալ, իրենց կարգին, կրնան կուսան կամ յենարան հանդիսանալ զանազան հանրօգուտ կազմակերպութեանց, համաձայն իրենց ընկերային եւ քաղաքական դաւանանքին:

Հրաշք մը պէտք ըլլար, եթէ նոյն լեռնակուտակ հոգերուն ծանրութեան տակ, սթափէին նաեւ անոնք որ երեսուն տարիէ ի վեր օրը իրիկուն կ'ընեն, փոս մը եւ տապանաքար մը փնտռելով Դաշնակցութեան համար:

Վաթսուն տարուան պատմութիւնը կ'ապացուցանէ թէ այդ կարգի բոլոր դաւերն ու խուժանավարութիւնները ծառայած են միայն թշնամին խնդացնելու:

Շ.

# ՕՐԸ ՕՐԻՆ

## ԻՆՉՊԷՍ ԿԸ ՀԵՏԵՒԻՆ ՄԵՐ ՔԱՅԼԵՐՈՒՆ

Նոր տեսայ վերջերս ծանուցուած գիրքը, «Թարիխտէ էրմէնիլէր վէ էրմէնի Մէսէլէսի (Հայերը պատմութեան մէջ եւ Հայկական Հարցը»: Տպուած՝ Անգարա, 1950):

Հաստափոր հատոր մը՝ 785 մեծադիր էջերով:

Հեղինակը՝ Էսատ Ուրաս: Եթէ չեմ սխալիր, Թուրքիոյ Ապահովութեան Տեսչութեան այն պաշտօնատարը, որուն համար կ'ըսէին թէ տիրաբար գիտէ արեւմտեան եւ արեւելեան հայերէնը (1916):

Ինչպէս ուրիշ Թրքական, Թրքամէտ կամ Թրքաշունչ հրատարակութիւններ, այս գիրքն ալ կը հետապնդէ հիմնական նպատակ մը,— յանցաւոր հռչակել Հայերը, իրենց կրած աղէտներուն համար: Սկսելով յեղափոխական կոմիտէներէն մինչեւ կաթողիկոսներն ու պատրիարքները, ազգ. եւ օսմանեան երեսփոխանները:

Հաղիւ թղթատած, ուշադրութիւնս գրաւեց բացառիկ պարագայ մը:

Էսատ Ուրաս իր վկայութիւններն ու փաստերը մեծագոյն մասով քաղած է հայկական աղբիւրներէ:

Մատենագրութեան մէջ, ինչպէս իւրաքանչիւր էջի տակ պիտի տեսնէք բազմաթիւ անուններ, իրենց գիրքերով, թերթերով եւ էջերով:

Այսպէս, Հայոց պատմութիւնը եւ Հայաստանի աշխարհագրութիւնը ներկայացնելու համար լայնօրէն օգտուած է Մովսէս Խորենացիէն (Խորենլի Մովսէս), Փաւստոս Բիւզանդէն, Ագաթանգեղոսէն, Զենոբ Գլակէն, եւ ուրիշ դասական հեղինակներէ:

Հայաստանի սահմաններն ալ կ'արձանագրէ համաձայն անոնց վկայութեան, գետերու, լեռներու, լիճերու եւն. հայկական անուններով:

Երեք – չորս էջ յատկացուցած է հայ թագաւորներու ցանկին:

Ժամանակակից դէպքերուն համար, իբրեւ աղբիւր ծառայած են բազմաթիւ հեղինակներ, ականաւոր թէ աննշան (ինչպէս եւ օտարներ):

Կարդացէք հետեւեալ անունները եւ պիտի խոստովանիք թէ անոնք աւելի ուշադրութեամբ հետեւած են մեր ներքին անցուդարձին եւ հրատարակութեանց, քան մենք՝ անոնց յայտնի եւ գաղտնի ձեռնարկներուն.—

Հ. Վարդան Հացունի, Գ. Խաժակ, Պատկանեան, Բժ. Տաղաւարեան, Քալանթար, Յ. Շահբազ, Չաքմաքճեան (պատմագիր), Բագրատ Խալաթեան, Պէրպէրեան (Պատմ. Հայոց), Չամիչեան, Վարդան վարդապետ, Սմբատ Բիւրատ, Զէյթունցի, Յովհ. Պապէսեան, Օրմանեան, Յ. Թէրզեան (Կիլիկիոյ ջարդը), Ծիհանկիւլեան, Աբով, Արշակունի Թէոդիկ, Քրիստափոր Միքայէլեան, (Ամբոխային տրամաբանութիւն), փրոֆ. Թումայեան, Ս. Զաւարեան, Մինաս Չերազ, Արսէն Միքայէլեան, Մուշեղ եպիսկ., Պապիկեան (երեսփոխան), Ատոմ (Յար. Շահրիկեան). Վ. Նաւասարդեան, Մ. Վարանդեան (ամբողջ էջեր), Ա. Խատիսեան, Ռ. Խանազատ, Սապահգիւլեան, Լէօ, Արամայիս, Գ. Օզանեան, Վ. Փափազեան, Կ. Բասմաջեան, Գ. Մեսրոպ, Ալիշան, փրոֆ. Ա. Խաչատրեան, Ակնունի, Զալխուշեան, եւն. եւն.:

Շուտով կ'իմանաք այլապէս շահեկան մանրամասնութիւններ:

ՎԱՀԷ

## Ի ՊԱՏԻՒ ԿԻԼԻԿԻՈՅ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ

Շաբաթ կէսօրէ վերջ Լիւթեսիայի մեծ սրահին մէջ Հ. Բ. Ը. Մ. Փարիզի վարչութիւնը թէյասեղան մը սարքած էր ի պատիւ Կիլիկիոյ հայրապետին: Ներկայ էր հրաւիրեալներու բազմութիւն մը, մօտ հարիւր հոգի:

Բարեգործականի վարչութեան կողմէ խօսք առին երեք ներկայացուցիչներ, Դպրոցասէրի կողմէ՝ տնօրէնը, Պ. Թ. Պօյաճեան, փառաբանելով Գարեգին կաթողիկոսին գիտական եւ գրական վաստակը, ինչպէս եւ Բարեգործականի բերած օժանդակութիւնը կրթական գործին, ազգ. հաստատութիւններու եւ Անթիլիասի Դպրեվանքին (տարեկան երկու հազար տոլար): Պ. Զօպանեան հայ գրագէտներու եւ մտաւորականներու յարգանքը մատոյց Հայրապետին, յիշելով անոր մշակութային աշխատանքը: Արտաւազդ արք. եւս յարգանք յայտնելով շեշտեց օժանդակութեան պէտքը: Յայտագիրը կը պարունակէր նաեւ գեղարուեստական բաժին մը,— նուագ եւ արտասանութիւն:

Ամէնէն վերջ խօսք առաւ Հայրապետը ինք, եռանդով եւ յաճախ յուզումով, կոչ ուղղեց ժողովուրդին առատաձեռնութեան, որպէսզի կարենայ ի կենդանութեան լրացնել ոչ միայն կիսաւարտ գրական գործերը, մասնաւորապէս ձեռագիրներու եւ յիշատակարաններու հաւաքածոն (6000 էջ, Ա. հատորը հրատարակուած, 1200 էջ), որ պիտի դառնայ մեր պատմութեան ամէնէն հիմնական աղբիւրներէն մէկը, այլեւ Բարգէն կաթողիկոսի Կ. Պոլսոյ ձեռագիրներու ցուցակագրութիւնը: Այս առթիւ ըսաւ թէ հազար թանկագին ձեռագիրներ կորսուած են 1915ի տեղահանութեան ատեն: «Լուսաւորչի կանթեղը Արարատի գագաթում անմար է, ինչպէս ինքը, մեր ժողովուրդը: Ես հաւատք ունիմ նրա ապագայի մասին: Ունիմ եւ սէր, եռանդ, աշխատանքի կամք, ծրագիր, պիտի օգնէք ինձ, խօսքը ձերն է: Խնդրում եմ, եղէք միաբան, ոչինչ բաներով իրար մի ուտէք, մի լինիք մոլեռանդ»:

× Այսօր, երեքշաբթի, ժամը 5ին Փարիզի Հայոց եկեղեցւոյ թիւ 1 սրահին մէջ, Գարեգին կաթողիկոսի հովանաւորութեամբ կը բացուի հայկական թանգարանի բաժին մը, ի ներկայութեան հրաւիրեալներու: Թանգարանը բաց է վաղը, չորեքշաբթի օր ժողովուրդին համար:

× Պ. Հայկ Աղաբէկեան կիլիկեան շրջանէն երեք հայկ. դրամներ նուիրեց կաթողիկոսին (Լեւոն Ա.էն, Հեթումէն ու Զապէլէն):

# Օտար համայնավարներու արտաքսումը Ֆրանսայէն

## 404 ՀՈԳԻԷՆ 228Ը ՍԱՀՄԱՆՆԵՐԷՆ ԴՈՒՐՍ ՀԱՆՈՒԵՑԱՆ

Ֆրանսա ապրող օտար համայնավարներու դէմ հինգշաբթի օրուընէ ասդին ձեռք առնուած միջոցները, կ'ըսէ ներքին նախարարութեան պաշտօնական մէկ զեկոյցը, կը ձգտին մաքրել երկիրը հակաֆրանսական գործունէութիւն մը ունեցող տարրերէն: Կառավարութիւնը ուզեց վերջին ազդարարութիւն մը ընել այս կարգի օտարականներուն, հասկցնելով թէ Ֆրանսայի մէջ իրենց գտած վեհանձն ասպնջականութիւնը թոյլ չի տար հակաֆրանսական գործունէութեան մը լծուիլ:

Արտաքսման հրամանագրեր ստորագրուած են 404 օտարներու դէմ: Այս հրամանագրերուն 288ը գործադրուած են արդէն: Արտաքսուած են 177 Սպանիացիներ, 5 Չեխեր, 14 խորհրդային քաղաքացիներ, չորս Ռումանացիներ, 59 Լեհեր, 13 Իտալացիներ, վեց Հունգարացիներ, չորս Յոյներ, երկու Պուլկարներ եւ չորս հայրենազուրկներ: Գումար՝ 288: Արտաքսումի ենթակայ կը մնան դեռ 116 հոգի, զորս կարելի չէ եղած գտնել: Ասոնց համար ալ հրամանագրերը ի զօրու կը մնան:

Արտաքսուածներէն 113 հոգի ճամբուեցան երկաթեայ վարագոյրէն անդին: Իտալիա ղրկուեցան 12, իսկ 150 հոգի ալ կեդրոնացուեցան Թուլոն: Երկու հոգի ուզած են Իսրայէլ երթալ:

Բոլոր գործողութիւնները գլուխ հանուեցան առանց որեւէ միջադէպի:

Ներքին նախարարութեան զեկոյցը կ'աւելցնէ, թէ իրենց ամբողջ արժէքը կը կորսնցնեն կարգ մը թերթերու այն գրածները, որոնց համաձայն, դիկտատորական վարչաձեւ մը միայն կրնայ արդիւնաւորապէս կռուիլ հինգերորդ զօրքին դէմ: Վերջին օրերու գործողութիւնները ցոյց տուին, որ ժողովրդապետութիւնն ալ կրնայ ինքզինքը պաշտպանել ազդու կերպով:

× «Օռոռ» (աջակողմեան) կը գրէ թէ շաբաթ օր ձեռնարկուեցաւ խմբովին արտաքսելու 150 Սպանիացիներ որոնք ձերբակալուած էին հինգշաբթի օր: Բոլորն ալ շոգենաւ դրուելով, ղրկուեցան Հիւս. Ափրիկէ:

Նոյն աղբիւրին համաձայն, փախստական զօր. Լիսթըրի հրամանին վրայ 20–30 արձակազէններէ կազմուած խումբեր տեղաւորուեր էին Թուլուզի եւ Պիրէնեան լեռներու շրջանին մէջ: Ասոնց պաշտօնն էր հսկել Ֆրանքօ-սպանիական սահմանին վրայ, ընդհարումի մը պարագային եւ ապահովել համայնավար կուսակցութեան տիրապետութիւնը այդ շրջանին մէջ:

× Համայնավար կուսակցութիւնը եւ Աշխատանքի Դաշնակցութիւնը կը շարունակեն բողոքի ցոյցեր կազմակերպել: Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, այս ցոյցերը մեծ յաջողութիւն չեն գտներ: Նիսի, Լիոնի եւ ուրիշ քաղաքներու մէջ երթեւեկի եւ աշխատանքի կարճ դադարներ տեղի ունեցան:

× Լեհական կառավարութիւնը բողոքեց Լե–

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

# Սուրբ Ղազար Հայոց

(Բ․ եւ վերջին մաս)

Կղզին կրկին անմարդաբնակ է եւ կը մնայ մինչեւ 1717 երբ Մխիթար Աբբայ կուգայ իրեն այցելելու եւ իրեն տալու իր բուն յատկացումը՝ որուն սպասեր էր դարերով։

Ուրեմն Մխիթար, նկատելով որ Ս․ Ղազարը յարմարագոյն վայրն է իր միաբանութեան հաստատման, այդ ուղղութեամբ կրկին կը դիմէ Ծերակոյտին, նորէն ապահովելով իր Մոչենիկօ եւ միւս ազդեցիկ բարեկամներուն բարեխօսութիւնը։

Ծերակոյտը ուզելով եկեղեցական տեսակէտով քննել հարցը, քանի որ պետական օրէնքով արգելք մը կար, խնդրանքին քննութիւնը կը յանձնէ իր երկու աստուածաբան խորհրդականներուն՝ որոնք «Աստուածամօր ծառաներ» կը կոչուէին։ Երանելի օրեր, ուր պետութիւնը աստուածաբան խորհրդատուներու պէտք ունի, մինչ արդի պետութեանց մօտ անոնց տեղը գրաւած են հիւլէաբան մասնագէտները։

Բարեբախտաբար մեր աստուածաբանները կը գտնեն որ պետութեան կրօնական սկզբունքները չեն հակասեր հայ կրօնաւորներու խնդրանքին գոհացում տրուելուն։ Այս հիման վրայ, Ծերակոյտը, Ճիովաննի Քոռնարօ Տոժին վաւերացումով 26 Օգոստոս 1717ի վճիռով Ս․ Ղազարը Մխիթարի եւ իր միաբանութեան վարձու բայց մշտնջենական բնակութեան կուտայ։ Այս « վարձու » եւ « մշտնջենական բնակութիւն » հակասական բացատրութիւնները աստուածաբան խորհրդականներուն նրբամտութենէն ծնած գիւտ մըն է հաւանաբար։

Այս շնորհին փոխարէն, Ծերակոյտը կը պարտաւորեցնէր միաբանութիւնը մշտնջենապէս ամէն օր «Թիւ պատարագ» մը մատուցանել կղզիին նախկին բնակիչներուն համար։ Ամէն տարի Ս․ Ղազարի տօնին օրը ութ լիտր մոմեղէն տալ «մուրացիկ» կոչուած կրօնաւորներուն, քան տարին անգամ մը չորս լիտր աւելցնելով քանակը, եւ այս կարգի ուրիշ պարտաւորութիւններ։

Վերջէն սակայն երբ Վենետկոյ հասարակապետութիւնը կործանեցաւ եւ Վենետիկն ինկաւ Աւստրիոյ տիրապետութեան տակ եւ երբ վանքերն ու անոնց կալուածները կառավարութենէն գրաւուեցան, Մխիթարեանները պետութենէն գնեցին Ս․ Ղազար կղզին 1833ին եւ իրական տէրերը դարձան։

8 Սեպտեմբեր 1717ին Մխիթար Աբբահայր իր միաբաններով հանդիսաւորապէս մուտք կը գործէր Ս․ Ղազար եւ հոն կը տօնէր 8 Սեպտեմբերի նուիրական թուականը։

Սակայն իր այդ վիճակին մէջ կղզին անբնակելի էր։ Մխիթար նորոգութեանց եւ շինութեանց ձեռնարկեց, եւ այս անհրաժեշտ աշխատանքները տեւեցին մինչեւ 1718ի ապրիլը։ Այդ թուականին է որ Ս․ Ղազար իրապէս կը դառնայ Մխիթարեանց մայրավանքը։

Անկէ վերջ եւ երկու դարերու ընթացքին Ս․ Ղազարի մէջ կատարուած շինութիւններուն, բարեփոխումներուն, թիւը երկար պիտի ըլլար։ Մխիթար ինքն իսկ կատարեց մեծ շինութիւններ, ինչպէս նորընծայարանը, վարժարանը, ճաշարանի սրահը, նոր սենեակներ, նոր խուցեր։ Եկեղեցին բոլորովին նորոգեց, բարձրացուց, պայծառացուց, վեց նոր խորաններ կանգնեց եւ մինչեւ 1740 այս աշխատանքները շարունակուեցան։

Իր յաջորդները շարունակեցին իրենց հիմնադրին գործը և մանաւորապէս հայկ․այլաշինարար ոգիին շնորհիՍ․Ղազարն այնքանպերճացաւ,զարգացաւ ու գեղեցկացաւ՝ որ եթէ Մխիթար այսօր հրաշքով մը աչօք բացօք կարենար տեսնել, դժուար թէ ճանչնար իր ձեռակերտը։

Հողն անգամ ընդարձակուած է։ Կղզին որ Մխիթարի օրով 7200 մեթր քառակուսի էր, 1815ին արդէն 14·400 մեթրի հասած է եւ այսօր աւելի եւս ընդարձակուած է։

Հոն այցելողները, որոնց մէջ փոքր թիւ մը չեն կազմեր թագակիր գլուխներ, ազնուականներ եւ աշխարհահռչակ համբաւներ, իրենց հիացումն արտայայտած են միշտ ի տես մշակոյթի եւ լոյսի վառարան այս գեղատեսիլ ձեռակերտին՝ որ դարձած է երբեմնի ուրուկանոց Ս․ Ղազարը։

Բայց իր այս հանգամանքէն զատ, ան շատ սիրելի է մեզի Մխիթարեան սաներուս համար նաեւ այն պատճառաւ որ հոն ապրած, հոն զարգացած, հոն տքնած ու պատրաստուած են մեր մեծ դաստիարակները։

Անոնցմէ շատեր անդարձ մեկնած են արդէն բայց իրենց թանկագին յիշատակը միշտ վառ ու կենդանի է մեր երախտագիտութեան մէջ։

Ջերմ երախտիքով կը յիշենք Հ․ Վարդան վրդ․ Հացունին եւ Հ․ Գաբրիէլ վրդ․ Նահապետեանը (Մեղու Շիրակայ) երկուքն ալ բազմահմուտ եւ ծայրայեղօրէն բծախնդիր անթերի աշխատանքի։ Սկեպտիկ Հ․ Սիմոն վրդ․ Երեմեանը, միշտ ուրախ ու կատակախօս մեծ վարպետը Հ․ Արսէն վրդ․ Ղազիկեան, նահապետական տիպար, անսահման բարութեամբ ժպտուն այլ միշտ լռիկ Հ․ Անանիա վրդ․ Գոնտաքճեանը՝ որ ինձմէ երեսուն տարիներ առաջ Մ․ Ռ․ գացած մօրեղբօրս օրերուն վարժարանն է եղեր եւ իմ աշակերտութեանս օրերուն հոն էր տակաւին։ Խստապահանջ արտաքինով այլ հոգածու եւ լիովին նուիրուած Հ․ Վրթանէս վրդ․ Խանպէկեանը՝ որուն յիշատակը մասնաւորապէս թանկագին եւ ինծի, անձնապէս իր հոգածութեան առարկան եղած ըլլալով։ Պատկառազդու Հ․ Յովհաննէս Թորոսեան, Աթոռակալ վարդապետը։ Ամէնքն ալ Հայոց մեծութեան նուիրուած Հայեր ու հայրեր՝ որոնք մեկնած՝ այլ թողած են մեզի, իրենց սաներուն, վառ ու միշտ սիրելի յիշատակ մը։

Եւ անոնք՝ որ հակառակ տարիներու աշխատանքին յոգնութեան, սրբազան նուիրումով տակաւին կը շարունակեն Մխիթարի եւ իրենց վսեմ գործը, ինչպէս բազմավաստակ եւ շատ սիրելի Հ․ Սահակ վրդ․ Տէր Մովսէսեանը՝ որուն աշակերտելու բախտն ունեցած եմ վենետիկեան ամբողջ շրջանիս։ Ազնուագոյն եւ ընկերական Հ․ Գարեգին վրդ․ Լազարեանը եւ վերջապէս միւս վարդապետները՝ որոնց խնամքը վայելած ենք երկար, ուղղակի թէ անուղղակի։

Դարադարձը առիթ էր մեր երախտագիտութեան տուրքը տալու իրենց։

ԲԱԲԳԷՆ ԳԱՎԷԶ

---

ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

# Գերման զօրավարները կը խլրտին

Լոնտոնի թերթերը կը գրեն թէ Արեւմտեան Գերմանիոյ գիւղական իջեւաններուն եւ սրճարաններու մէջ գերման նախկին զօրավարներ եւ բարձրաստիճան սպաներ կենդանութեան նշաններ կը ցուցնեն։

Ամէն շաբթու ժողով մը կը գումարուի մենաւոր գիւղի մը կամ անտառի մը մէջ։ Ամէն շաբթու բանաձեւ մը կը քուէարկուի, պահանջելով ճանչնալ իրենց հանգամանքը իբրեւ ասպարէզով զինուորներ։

Դաշնակից պետութեանց ապահովութեան պաշտօնեաները մինչեւ 5000 կը հաշուեն թիւը այն բարձրաստիճան սպաներուն որոնք սերտ կապեր ունին իրարու հետ եւ առիթի կը սպասեն նորէն գործի ձեռնարկելու համար։ Առ այժմ գըլխաւոր խնդիրը այն է թէ ո՛վ գործ պիտի ճարէ այս քաջավարժ, ճարտար զինուորական առաջնորդներուն, որոնք կրնան վարիչները դառնալ ռազմական կարեւոր ուժի մը։

Արեւելեան Գերմանիոյ մէջ Ռուսերը վարպետօրէն կ՚օգտագործեն այս կարգի սպաները։ Երեք շաբաթ առաջ, համայնավար կուսակցութեան Գ․ համագումարին մէջ, վարչապետը՝ Օթթօ Կրօթվոլ պարզեց իր տէրերուն տեսակէտը, հետեւեալ յայտարարութեամբ։

— « Կացութեան տէր կարելի է դառնալ զինու զօրութեամբ եւ ոչ թէ իրաւունքով։ Մենք պէտք է զինուորագրենք ոեւէ նախկին զօրավար կամ նացի որ պատրաստ է ուժ տալու մեր դատին, այլապէս կուսակցութիւնը պիտի զրկուի թանկագին աջակցութենէ մը»։

Երեք օր վերջը, Գերմանիոյ անգործ զօրավարներուն ամենամեծ ներկայացուցիչ մարմինը «Եղբայրական Միութիւնը» դիմումներ ստացաւ Արեւելեան Գերմանիայէն։ Կազմակերպութեան գլխաւոր վարիչը, Հասօ Ֆոն Մանթէօֆըլ, Հիթլէրի նախկին ամենավարպետ մասնագէտը մեքենագէն պատերազմի, մերժեց բոլշեւիկներուն առաջարկները, բայց իր պաշտօնակիցները խոստափուկ նայուածքներ կ՚ուղղեն։

Զօր․ Մանթէօֆըլ, որ այժմ պտուտակի գործարան մը կը բանեցնէ սեղանաւորի մը հետ, Տիւսէլտորֆի մօտ, կը կարծէ թէ արեւմտեան պետութիւնները պէտք ունին իրեն եւ իր հետեւորդներուն։ Վեց ամիս առաջ, յուշագիր մը ուղղելով Ատընաուըրի (վարչապետ), կը բացատրէր թէ Գերմանիա կրնայ 30 մեքենագէն զօրաբաժիններ տրամադրել արեւմտեան Եւրոպայի պաշտպանութեան համար։ Ինչպէս դիտել կուտան իրազեկներ, Ատլանտեանի զինակիցները խակապէս անհրաժեշտ կը գտնեն այդքան զօրաբաժին, զօրացնելու համար Եւրոպայի պաշտպանութիւնը։

Նոյն աղբիւրին համաձայն, դէպի սպաներու « Եղբայրութիւնը » կը դիմեն այն տարրերը որոնք համոզուած են թէ Գերմանիան վերջնական փլուզումէ կրնայ փրկուիլ միայն շնորհիւ «համազգեստէ զրկուած» կորովի դէմքերու։ Անոնք այս համոզման յանգած են պատմութեան դասերէն։

Եղբայրական Միութիւնը, որ ստեղծուած էր չորս տարի առաջ, հանդարտօրէն եւ գաղտնապէս, նախ կը ձգտէր հանգստեան թոշակ ապահովել անգործ սպաներուն։ Ժամանակ անցնելով, սկսաւ հետզհետէ աւելի լայն նպատակներ հետապնդել։ Անգլեւսաքսոն աղբիւրներու համաձայն, Միութիւնը կրցած է հաւաքել քանի մը միլիոն մառք, եւ հրահրելով հազարաւոր անդամներու ազգային զգացումները, կը ջանայ իր մարդիկը տեղաւորել վարչական դիրքերու մէջ։

Դաշնակից ուժերու գաղտնի սպասարկութիւնները ստուգած են որ Միութեան անդամները բազմաթիւ գաղտնի ճամբորդութիւններ կը կատարեն դէպի արեւելք։

Այդ շրջան ուղեւորներէն մէկը, Ալֆրէտ Կրնքշ, որ ղեկավար անդամ է Միութեան «Ներքին Խորհուրդին» մէջ, վերջերս Փրակա գացած էր ստիպողաբար, Կոմինֆորմի ժողովէն առաջ։ Այս մարդը սերտ կապեր հաստատած է նախկին վարիչի մը Օթթօ Շթրասէրի հետ, որ Քանատա կը գտնուի։ Միեւնոյն ատեն ազգականն է նախապատերազմեան «Սեւ – Ճակատ»ի վարիչին՝ Կրեկոր Շթրասէրի։

Ուրիշ երէց սպաներ ալ վերջերս գաղտնի ճամբորդութիւններ կատարած են դէպի արեւելեան Գերմանիա, ինչպէս եւ Արեւելեան Եւրոպայի զանազան երկիրները, տրամադրութիւնները չօշափելու համար։

Այս բոլոր շարժումները անշուշտ ուշադրութիւն գրաւած են արեւմտեան պետութեանց զինուորական շրջանակներուն մէջ։

Թղթակից մը դիտել կուտայ թէ անոնք մինչեւ հիմա կարեւորութիւն չէին տար զանազան թելադրութեանց․ բայց այժմ կ՚ըմբռնեն թէ Գերման նախկին սպաներու խլրտումները կրնան իրական վտանգ մը դառնալ, եթէ կազմակերպուած գործողութեան մը վերածուին։

Ամէն պարագայի մէջ, կ՚եզրակացնէ նոյն թղթակիցը, Գերմանիոյ խորտակուած բանակին անգործ զօրավարները, գնդապետները եւ հազարապետները այլեւս ձանձրացած են գետնախնձոր մշակելէ կամ իբրեւ քարտուղար ծառայելէ պետական եւ անհատական հաստատութեանց մէջ։ Անոնք ի վերջոյ պիտի հակին ա՛յն կողմը որ կը գնահատէ իրենց իրական արժանիքը եւ փայլուն հեռանկար մը կը ցուցնէ։

Թ․Ա․Թ․

---

# ՀԱՅԱՍՏԱՆ

(Ամփոփուած Խ․ Հայաստանի թերթերէն)

## ՇԱՐԺԱՆԿԱՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

1924ին Երեւանի մէջ կը կազմակերպուի «Հայկինօ»ն, որ ոչ միայն պիտի զբաղէր շարժանկարներուն ցուցադրութեամբ, այլեւ պիտի կազմակերպէր ինքնուրոյն ժապաւէններու արտադրութիւնը։

Այդ տարիներուն էր որ շարժանկարի վարպետները ստեղծեցին կարգ մը լաւագոյն ֆիլմեր, ինչպէս « Նամուս»ը, «Գիքոր»ը եւայլն։

1935ին արդէն «Հայկինոյ»ի արտադրութեամբ Հայաստանի եւ միւս եղբայրական հանրապետութեանց պաստառներուն վրայ ցուցադրուեցաւ « Պէպօ » խօսուն շարժանկարը, ըստ հայ դասական թատրերգակ՝ Գ․ Սունդուկեանի համանուն թատրերգութեան, եւ այդպէսով Հայաստանի մէջ սկսաւ խօսուն շարժանկարի արուեստը։ Այնուհետեւ պաստառ բարձրացան «Երկիր Հայրենի», « Լեռնային մարշ » նկարները, «Մեր կոլխոզի մարդիկ», «Զանգեզուր»ը, «Դաւիթ Բէկ» պատմական շարժանկարը, « Արարատեան դաշտի աղջիկը», «Սովետական Հայաստան» եւայլն։

Շարժանկարը մարդոց դաստիարակութեան զօրաւոր միջոցն է։ Դէպի աշխատաւորութեան լայն զանգուածները կը տանի գիտութիւնը, լուսաւորութիւնը եւ աշխատաւորութիւնը կը դաստիարակէ հայրենասիրական ոգիով։

Ներկայիս Հայաստանի քաղաքներուն եւ գիւղերուն մէջ կան բազմաթիւ շարժանկարի պաստառներ։ Լայնօրէն կը ցուցադրուին Հայաստանի գիւղերուն եւ քաղաքներուն մէջ հետեւեալ շարժանկարները․— « Երդում», «Զափաեւ», «Երիտասարդ Գվարդիա » , «Միչուրին » , «Ստալին – կրատիան Ճակատամարտը», «Նրանք ունին հայրենիք», «Պերլինի անկումը»։

Ռուսաստանի եւ միւս հանրապետութեանց մէջ լոյս տեսած շարժանկարներու մեծ մասը Երեւանի շարժանկարի աշխատասենեակը կը ձայնագրէ հայերէն, եւ ժողովուրդը կը դիտէ եւ կը լսէ մայրենի լեզուով։

Հայաստանի 150 կոլխոզներուն եւ սովխոզներուն մէջ կազմակերպուած են մնայուն շարժանկարներ։ Այն գիւղերուն մէջ ուր չկան մնայուններ, կը գործեն շրջիկ շարժանկարներ։ Աւելի քան երեսուն շարժանկար – թատրոններ ստեղծուած են արհեստակցական եւ հանրային կազմակերպութեանց կողմէ։

Երեւանի « Մոսկուա » Կինօ – թատրոնի հրակայ շէնքը իր երկու մեծ դահլիճներով կը նկատուի Ս․ Միութեան առաջնակարգ թատրոններէն մէկը։ Կինօ – թատրոնը աւելի քան 1·200·000

ՆԻՒԹԵՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

# ՎԵՐՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԷՆ

Երեսուն երկու տարի առաջ, Ատրպատականի հայ եւ ասորի տեղացի թէ գաղթական բազմութիւնները, ինչպէս նաեւ Վասպուրականի վերջին նահանջին պատճառով Սալմաստ հասած քսան հազար Հայերը հարկադրուեցան օրհասական եւ անհաւասար կռիւներ մղելու, յանուն իրենց գոյութեան:

Կռիւ Թրքական բազմահազար եւ կանոնաւոր բանակներու, քրտական քանի մը զօրեղ աշիրէթներու եւ Թաթարներու դէմ :

Ապրիլեան եղեռնի (1915) եւ ամբողջ պատերազմի տեւողութեան այնքան առատօրէն թափուած հայ արիւնը դեռ չէր կշտացուցած Թուրք բորենիները :

Խոյ, Սալմաստ, եւ Ուրմի գաւառներու բնիկները եւ պատերազմի հետեւանքով այդ վայրերը ապաստանած հայ եւ ասորի գաղթականները չէին վրիպած Թալէաթ – Էնվէրի եւ նմաններու ուշադրութենէն :

Պէտք էր կոտորել նաեւ այդ շրջաններու քրիստոնեաները (75000 հոգի):

Պէտք էր բնաջնջել ամբողջ հայութիւնը եւ այդ դիւային ծրագիրը իրագործելու համար անհրաժեշտ էր ժամ առաջ պաշարել, քարուքանդ ընել նաեւ ռուսահայական կոչուած հողամասը:

Բնաջնջել ամբողջ հայութիւնը, ընդմիշտ թաղելու համար Հայկական Հարցը, որ՝ տեւական մտահոգութիւն ու կատարեալ մղձաւանջ կը պատճառէր արիւնռուշտ Թուրքերուն :

Մուսուլ – Թաւրիզ գիծով, զօրաւոր բանակով մը եւ առատ զինամթերքով դէպի Զանգեզուր կ'աճապարէր Էնվէրի եղբայր Նուրի փաշան:

Իսկ Վան – Ատրպատական – Նախիջեւան գիծով դէպի Երեւանն չտապելու խիստ հրաման ստացած էր Թրքական Դ. զօրաբանակն ու քանի մը քիւրտ աշիրէթներ, Ալի – Իհսան փաշայի հրամանատարութեամբ :

Ճակատագրական օրեր կ'ապրէր նաեւ Արարատեան դաշտի բնիկ եւ գաղթական Հայութիւնը:

Վէհիպ փաշան մտած էր Ռուսահայաստան:

Ռուսական բանակներու «դէպի տուն» նահանջը, մինակ ձգած էր մեզի մեր դարեւոր եւ անհամեմատօրէն զօրաւոր թշնամիին դէմ :

Բայց ձախողեցաւ թշնամին, վասն զի, դարերու բռնութիւններէն զզուած եւ ընդվզած ցեղերու բեկորները, դիւցազնական պայքարի յաղթանակին իմաստութեամբ, գազազեցան եւ տարերային անզուսպ պոռթկումներով, բռնաւորներու հզօր եւ անպարտելի համարուած ուժերը զգետնեցին :

Պայքարը՝ իր սկզբնական շրջանին թոյլ եւ անյուսատու էր մեզ համար, բայց հետզհետէ սաստկացաւ եւ մահասարսուռ ու մահասփիւռ կռիւներուն իրենց մասնակցութիւնը բերին բոլորը, բոլորը, այր թէ կին, ծերունի թէ պատանի :

Սարսեցան պալատները եւ ճարճատեցան կողերը բռնաւորներու :

« Ասոնք ուրիշ տեսակ կեավուրներ են» գրեց Թրքական յաղթապանծ փաշան իր մտերիմ զօրականներուն եւ զգուշացուց, երբ՝ իր վաշտերը կը ջախջախուէին Սալմաստի Ահրեւան, Սանամէրիկ շրջաններու մէջ եւ Շաքարեազի լանջերուն վրայ:

Երբ՝ Նուրի փաշայի ասկեարները անձնատուր կ'ըլլային Ուրմիոյ Պապաուլիի, Դաշագիւլի եւ ուրիշ կռիւներու մէջ :

Երբ՝ Թրքական թնդանօթները, գնդացիրները եւ զինամթերքը բաժին կը դառնային մեր վաշտերուն :

Ու երբ՝ շատ մը վայրերու մէջ, լեղապատառ, խելակորոյս ասկեարներ, սպաներ եւ փաշաները ծնրադրելով մեր զինուորներու առջեւ գութ կ'աղերսէին...

« Խաչընըզա գուրպան, Էրմէնի օլաջայըզ» աղաղակելով եւ լալով :

Հրա՛շք էր, հրա՛շք... Ստրկական շղթաները օղակ – օղակ կը փշրուէին ու բռնաւորները կը խոնարհէին իրենց ստրուկներուն առջեւ :

Օ երջանկութիւն, պայքարող եւ յաղթանակող հայ բեկորներու :

X

Դաւադրութեամբ եւ տմարդօրէն ասորոց Մար Շիմօն պատրիարքն ու իր զինակիցները սպաննել տուող Թուրք դահճապետները ամօթահար եղան, զարմանքով եւ զարհուրանքով դիտեցին հայ – ասորական փոքրաթիւ ուժերու մղած հերոսական կռիւները :

Մինչ այդ՝ Թուրք զօրքը քաջ, տոկուն, կարգապահ եւ անպարտելի համարող Թուրք հրամանատարներն անգամ խոստովանեցան թէ՝ «Հայը նոյնքան եւ աւելի քաջ է, անպարտելի՝ երբ զինուած է, համերաշխ է եւ երբ իմաստուն ու քաջ ղեկավարներ ունի»:

Ատրպատականի մէջ տեղի ունեցած կռիւները տեղի ունեցան եօթնեակ մը երիտասարդներու նախաձեռնութեամբ եւ յանդգնութեամբ ծնունդ առնելով. որոնց եկան միանալու նաեւ Վասպուրականի փորձուած քաջերը եւ Ջուլամերիկի լեռնարնակ, ազատատենչ Ջիլօ – Ասորիները :

Պաշարուած էինք, աշխարհէն կտրուած, « բարեկամ ու դաշնակիցներէ» լքուած ու միայնակ, յոյսը մեր բազուկին ու զէնքին կապած, « մահ կամ ազատութիւն» հաւատամքով եւ գերագոյն վրէժխնդրութեամբ զինովցած :

Ո՛չ օգնաւ ունէինք, ո՛չ կազ, եւ ո՛չ իսկ քանի մը ռումբ պատահաբար մեր ձեռքն անցած թնդանօթներուն համար :

Բայց եւ այնպէս ութն ամիս չարունակ Թրքական զօրեղ բանակները զբաղեցան մեր փոքրաթիւ ուժերը յաղթահարելու, բնաջնջելու եւ ձախողեցան :

Զոհե՞ր... Այո, խրամներու մէջ, պատնէշին վրայ, զոհեր նաեւ հիւանդութեանց եւ տարապայման պարագաներու մէջ, բայց համեմատաբար փոքրաթիւ :

Մեր հերոսամարտի դերը անջնջելի պիտի մընայ հայ ազատագրական շարժումին պատմութեան մէջ, իսկ մեր հերոսները յաւիտեան անմահ:

« Մեր բանակները ժամանակին չկրցան հասնիլ Շուշի եւ Երեւան, խեղճ Վէհիպ փաշան մինակ մնաց եւ Հայերը անկախութեան տիրացան» գրեց «յաղթապանծ» Ալի Իհսան փաշան, « Թէվհիտի Էֆքեար» թերթին մէջ 1922ին:

Թշնամի փաշայի մը վկայութիւն՝ Թուրք պատմութեան էջերուն մէջ ամօթալի էջեր արձանագրելու համար :

Եւ վայ անոնց, որոնք կ'ուրանան մեր «Արիւնոտ արանց» մարտիրոսութիւնն ու յաղթանակները :

Փաստ է ուրեմն, որ Սարտարապատի, Ղարաքիլիսէի, Բաշ – Ապարանի յաղթանակներու յաջողութեանց առանցքը կը հանդիսանայ Ատրպատականի հերոսամարտը :

Եւ դժուար չէ բնաւ պատկերացնել ողբերգութիւնը , եթէ Ալի Իհսանի, Նուրի փաշայի եւ բազմահազար բանակներու, քրտական հորդաներու եւ Նախիջեւանի Թաթարներու միացեալ ուժերը որոշուած ժամանակին հասնէին Շուշի , Երեւան եւ միանային ու գործակցէին Վէհիպ փաշային :

Այսօր՝ երբ՝ մենք յատուկ պաշտամունքով եւ երանութեամբ կը վերյիշենք «Մայիս 28»ի յաղթանակները, եւ ուրախ ենք մեր ունեցած ներկայ Հայաստանով, պարտ ենք խրախուսուիլ եւ դաս առնել Ատրպատականի հերոսամարտէն :

Այս պահուս, երբ՝ օրագրէս կ'ընդօրինակեմ այս վերջաբանը, կսկիծով, կսկիծով կը վերյիշեմ արդարակորով Կոստին, խորաքննին Սամսոնը առիւծ Ջիմօն, յանդուգն Ալէքսանը, հերոսներ անհման՝ Մոկացի Համբարձում, Շատախցի Պօղոս, Կառկառցի Մուրատ եւ դեռ շատեր, շատեր :

Փառք բոլորին, երիտասարդ թէ ծերունի, յայտնի թէ անյայտ, որոնք ինկան մեր հայրենիքն ու մեր փառքը կերտելով :

ԱԶԳԻՆ

ԳԻՏԱԿԱՆ ԱՍՈՒԼԻՍ

# Ծովաձձիւն եւ կէտը

Ծովը հարուստ է կենդանական բազմազխի տեսակներով, մանաւանդ մանրադիտային ձճինները, անասնիկները եւ կենդանաբոյսերը անհամար ներկայացուցիչներ ունին ծովուն մէջ, որոնց այլազան կազմախօսութիւնը երկրաչափական հըրաշալիքներ կը կազմէ ու ձեզ կը փոխադրէ առեղծուածային հէքեաթական աշխարհ մը: Գերմանացի փրօֆ. Հէնսէն այս մանրաձճինները կոչած է փլակտոն, որ յունարէն կը նշանակէ թափառիկ, յածուն: Իրօք ասոնք համախումբ կը յածին ծովուն մակերեսին վրայ եւ մէկ խորանարդ մեթր ջուրին մէջ կարելի է գտնել մինչեւ երեք միլիոն անասնիկներ: Ովկիանոսին մէկ հէքտար մակերեսը 7–8 սանթիմեթր խորութեամբկարող է տարեկան թոններով արտադրել ատոնցմէ: Գիտունները կը խորհին ծովային այս բեղուն արտադրութիւնը օգտագործել մարդկային սննդառութեան: Մի՛ զուցէ մօտիկ ապագային մեր սեղանին վրայ գանոնք պիտի ճաշակենք վարդագոյն մսի դոնդողի ձեւին տակ, որ պիտի ըլլայ կարիդոսի (crevette) համը յիշեցնող համեղ սնունդ մը՝ հարուստ կենսանիւթերով: Այժմ փորձեր կը կատարուին զանոնք հաւաքելու լաւագոյն եղանակով: Այդ նպատակաւ նախընտրութիւն կը տրուի Նիլոնէ հիւսուած խիտ ուռկաններու :

Ահա մարդիկ կ'ուզեն իւրացնել նաեւ կէտ ձուկին գլխաւոր սնունդը: Արդարեւ, կէտը հակառակ որ կենդանիներուն մէջ ամէնէն խոշորն է, կը սնանի մեծ մասամբ մանր ձուկերով, թուլամորթներով, ու այդ անտեսանելի մանրէային էակներով: Թէ ինչպէ՞ս զանոնք կ'որսայ, պարզապէս ծովուն ջուրը բերնին մէջ առնելով եւ որսերը, զտելէ, իւրացնելէ վերջ ջուրը դարձեալ դուրս տալով: Ինչպէս գիտենք, կէտերը ատամներու փոխարէն հինգ հարիւրէ աւելի վիժակներ (fanons) կը կրեն իրենց բերնին մէջ, որոնք տեսակ մը ատամնակերպ երկար շեղբեր են եղնգային ճկուն նիւթէ կազմուած եւ կը ծառայեն որսը ջուրէն զտելու: Ասոնք ժամանակին կը գործածուէին կնոջական սեղմերաններու շինութեան մէջ:

Երբ կէտերու մասին կը խօսուի ժողովուրդը զանոնք կը դասէ ձուկերու կարգին: Այս շփոթութիւնը առաջ կուգայ նախ իր արտաքին տեսքէն որ նման է ձուկին: Ցետոյ՝ իր անունէն, որ յունարէն կը նշանակէ ձուկ: Կայ նաեւ իր ջուրինմէջ ապրելու հանգամանքը: Մինչդեռ կէտը կազմախօսական ոչ մէկ կապ ունի ձուկերու հետ: Կիտազգիները ընդհակառակը ստնաւոր կենդանիներ են , որոնք իրենց ձագերը կը սնուցանեն իրենց ստինքներէն արտադրած կաթով եւ կը շնչեն թոքերու միջոցաւ, մինչ ձուկերու շնչառութիւնը կը կատարուի խռիկներով եւ թթուածինը կը ստացուի ջուրէն:

Կէտերու կաթը կնոջ կաթէն 15 անգամ աւելի իւղոտ է ու թանձր: Իբրեւ թէ կաղինի համ ունի եւ կարող է ջուրին երեսը մնալ, ուրկէ ձագերը դիւրութեամբ կը կերակրուին: Բուն կէտերը 15էն 33 մեթր երկարութիւն կ'ունենան եւ կը կշռեն հարիւր հազարէն մինչեւ 130 հազար քիլօ: Այսինքն մօտաւորապէս 30 փիղերու կամ 100 պարտ եզներու ծանրութիւնը : Միայն սիրտը կը կշռէ 600 քիլօ:

Հակառակ իր թոքային շնչառութեան, կէտը կարող է 20 – 30 վայրկեան մնալ ջուրին մէջ, դադրեցնելով իր շնչառութիւնը, շնորհիւ իր սըրտի աջ բաժանմունքի յատուկ կառուցուածքին: Նոյնիսկ այլ տեսակներ կան որոնք ջուրին տակ կը մնան մէկ ժամէ աւելի :

Կիտազգիները բաժնուած են քանի մը ցեղերու: Բացի բուն կէտէն, մնացեալները աւելի փոքըր են: Անոնց մէջ արիւնարբու գազաններ չեն պակսիր, որոնց առաջին զոհերն են բուն կէտերը: Օրինակ Դեղաղը (orque) ահռելի հրէշ մըն է որ կը յօշոտէ իր ցեղակիցները: Անոր ստամոքսին մէջ գտնուած են շանաձուկեր, փոկեր, բէնկուէններ, եսկիմացիներու շուներ եւ այլ ծովային գազաններ :

Կիտազգիներու ընտանիքին մէջ կը մտնեն .— Ջրշունները, փոկերը, ծովախոզերը (marsouin) Թելփինները (եօնուզ պալըղը) եւ ափրիկեան գետերու հսկայ կենդանիներ: Այս վերջինները առհասարակ ջրային բոյսերով կը սնանին :

Թելփինները համարուած են մարդոց օգնականներ ու պաշտպաններ եւ շատ նախապաշարեալ աւանդութիւններ հիւսուած են իրենց մասին :

Եղաւ ժամանակ մը, երբ կէտերը անհետացման ճամբուն վրայ էին, սակայն վերջին պատերազմը առիթ ընծայեց անոնց դարձեալ աճելու եւ բազմապատկուելու: Միայն 1938ին 27 հազար կէտեր որսացուած են: Կէտը կ'որսան իր ունեցած առատ իւղին համար: Ամէն տարի թոներով միս կը փճանար ու դարձեալ ծովը կը թափուէր: Սակայն վերջին պատերազմի ընթացքին կատարուած փորձեր հաստատեցին կէտի մսին սննդական արժէքը: Ցատկապէս Անգլիացիք գոհացած են զայն որ ինչպէս կը հաւաստեն հորթի մսին համը ունի:

Այժմ կը խորհին այս միսն ալ հրամցնել սեղանի վրայ:

Ուրեմն պատրաստուեցէք կէտն ալ գտնել սեղանի համադամներու կարգին ...

Գ. ՊՕՅԱՃԵԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆ

ԷՋՄԻԱԾՆԻ ՃԵՄԱՐԱՆԻ ներկայ տեսուչն է Կիւրինցի յայտնի մտաւորական Մինաս Մինասեան: Դասախօսներն ու դասաւանդուած նիւթերն են.— Փրօֆ. Տոքթ. Աշոտ Աբրահամեան՝ Հայոց լեզուի աղբիւրներու ուսումնասիրութիւն: Փրօֆ. Սիմոնով՝ տոմարագիտութիւն: Մ. Մինասեան (վերատեսուչ) անգլերէն լեզու : Բանասիրութեան թեկնածու Ա. Պօղոսեան՝ Հայոց լեզու, լեզուի տեսութիւն, հայ լեզուի պատմութիւն, գրականութեան տեսութիւն :

Մանկավարժական կաճառի ասպիրանդ (թեկնածու) Մ. Գամազեան՝ հոգեբանութիւն եւ տրամաբանութիւն: Տնտ. գիտութեանց թեկնածու Ս. Աւագեան՝ արդի պատմութիւն եւ փիլիսոփայութեան պատմութիւն:

Ռուս. մանկավարժական կաճառի դասախօս Ելնա Թումանեան՝ ռուսերէն լեզու : Վաստակաւոր ուսուցիչ Հրանդ Քոչարեան՝ մաթեմաթիք եւ ֆիզիք: Երեւանի մանկավարժական կաճառի շըրջանաւարտներէն Արմէն Մինասեան՝ նոր շրջանի

# ՅԱՌԱՋ
ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE
HARATCH
Fondé en 1925
R. C. S. 376.286
Directeur-Propriétaire : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13)
Վեցամս. 800 ֆր., Տար. 1600. արտ. 2500 ֆր.
Tél. GOB. 15-70 Գին 7 ֆր. C.C.P.Paris 1678-63
Mercredi 20 Septembre 1950 Չորեքշաբթի 20 ՍԵՊՏ.

26րդ ՏԱՐԻ — 26e Année No. 6259–Նոր շրջան թիւ 1670
Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


ՄԵՐ ԽՕՍՔԸ

## ԽՂԱՃՆ ԱԼ ՊԻՏԻ ՔԱՆԴԵՆ

Միշտ նոյն վրդովիչ տեղեկութիւնները Պոլսէն, ազգային անցուդարձի մասին: Նոյն անտէրութիւնը վերէն վար, յաւելեալ եւ ճոխացեալ խայտառակութիւններով:

Պատր. տեղապահը կը շարունակէ կոտրել-թափել, իբրեւ թէ Հայ. Եկեղեցին փրկելու եւ ժողովուրդին շահերը պաշտպանելու համար:

Եթէ հաւատանք հրատարակուած լուրերուն, ուրիշ 10—15 քահանաներու եւս արգիլած է պաշտօնավարել:

Իր ընդդիմադիրներն ալ պայքարը կը շարունակեն նոյն ուժգնութեամբ, եկեղեցիէ եկեղեցի փոխադրելով կախակայեալ կրօնաւորները:

Երբ անոնք պատարագ մատուցանեն, ընդդիմադիր թերթը կ'արձանագրէ իբրեւ մեծ յաջողութիւն: Իսկ հակառակորդները եղածը կ'անուանեն «հրաշափառ խայտառակութիւն»:

Եւ այսպէս ամէն կիրակի զանազան ելոյթներ, նոյնիսկ միջադէպեր եկեղեցիներու մէջ:

Կը թուի թէ երկու օրաթերթերու ձեռքը մնացած է Պոլսոյ ազգ. գործերուն ղեկավարութիւնը:

Ամէնէն վրդովիչ պարագան այն է որ, երկու կողմերն ալ պարբերաբար ափ կ'առնեն կառավարութեան դուռը:

Այլեւս ջուրի ճամբայ դարձած են Պոլսոյ կուսակալութիւնը եւ ուրիշ պաշտօնատուններ:

Ատեն-ատեն պատուիրակութիւններ ալ կը ղրկուին Անգարա, «լուսաբանութիւններ» տալու համար վարչապետին եւ նախարարներուն: Անշուշտ փոխադարձ մեղադրանքներով:

Դժուար չէ երեւակայել թէ Թուրք նախարարները ի՛նչ տպաւորութիւն կը կրեն այս յաճախադէպ երթեւեկներէն:

Ե՞րբ տեսած էին այսքան մերկապարանոց խայտառակութիւն, ափ մը հայութեան մէջ:

Մանաւանդ որ, Թուրք մամուլն ալ օրը օրին կը հետեւի անցուդարձին:

Երբեմն շատ աւելի մանրամասն տեղեկութիւններ եւ «հայրենակցական» յորդորներ կը տեսնէք այս կամ այն Թուրք թերթին մէջ:

Չկայ ներքին պարագայ մը որ ծանօթ չըլլայ յետին Թուրք խմբագրին կամ լրաբերին: Պակասը կը լրացնեն հայ խմբագիրները իրենք:

Այս ճակատին վրայ եւս կը փայլի պատր. տեղապահը, Գէորգ արք. Արսլանեան, ունենալով իր հաւատարիմ լրաբերները: Ի հարկին ինք անձամբ տուն տալով զանազան տեղեկութեանց եւ թելադրութեանց:

Անշուշտ արտասահմանի մամուլը չէ որ խելքի պիտի կանչէ Պոլսոյ ապերասան տարրերը, աշխարհական ըլլան թէ կրօնաւոր:

Բայց, այդ մամուլը ունի տարրական պարտականութիւն մը, եթէ կ'ուզէ բարերար դեր մը կատարել:

Որքան կրցած ենք հետեւիլ, կարգ մը թերթեր իւղ կը լեցնեն կրակին վրայ, պատր. տեղապահը պաշտպանելով տեղի-անտեղի: Փորձելով պարտկել անոր անպարտկելի մեղքերը:

Անոնք նոյնութեամբ կ'արտատպեն տեղապահական մամուլին սուտ-իրաւ լուրերն ու տեսակէտները, պարզապէս դիրք բռնած ըլլալու համար: Ի հեճուկս «որոշ հոսանքի մը»:

Խեղճերը չեն անդրադառնար որ եղածն ալ քանդելու կը ծառայեն, գիտակցաբար կամ անգիտակցաբար:

Շատ աւելի ծանր պատասխանատուութեան մը տակ է բարձրաստիճան կղերը:

Անոնք որ պարկեշտօրէն կը հետեւին դէպքերուն եւ գիտեն թէ ի՛նչ կը ներկայացնէ Էջմիածինը՝ բոլշեւիկեան թաթին տակ, շատ ալ մեղադրելի պիտի չգտնեն Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը:

Ան «վախճանական վճիռ» մը արձակեց մէկ տարի ձգձգելէ վերջ: Եւ այնուհետեւ քար լռութիւն, որ երբեք բարենշան չէ:

Ոչ ոք պիտի կրնար ապացուցանել թէ իրապէս ինքն է հեղինակը կախակայումներուն: Կրնանք վստահ ըլլալ թէ լուր անգամ չունի բուն անցուդարձէն, ինչպէս եւ «վախճանական»ին հետեւանքներէն:

Այս կացութեան մէջ, տարօրինակ չէ՞ արտասահմանի ազատ կղերին պիղատոսական դիրքը: Շ.

## ՕՐԸ ՕՐԻՆ

### Ի ՊԷՏՍ ԶԱՐԳԱՑԵԼՈՑ

Տարիներ առաջ այս խորագիրը առաջարկեր էի ողբացեալ Տարագին, որպէսզի լեզուական-քերականական դասեր աւանդէ:

Եւ «Ի պէտս Զարգացելոց»ը դարձաւ մնայուն խորագիր մը «Յառաջ»ի համար: Առանց սահմանափակման:

Այսինքն, սովորութիւն դարձաւ ազգային-քաղաքական խնդիրներ ալ շօշափել այդ վերնագրին տակ:

Ահաւասիկ հրատապ նիւթ մը եւս, որ ուղղակի կը խօսի «Զարգացելոց» սրտին:

Բոլորդ ալ գիտէք թէ միլիոնաւոր ստորագրութիւններ կը հաւաքուին ի սփիւռս աշխարհի, ուժ տալու համար Ստոքհոլմի կոչին, որ կը պահանջէ արգիլել հիւլէական ռումբը եւն.:

Ամենայն Հայոց կաթողիկոսն ալ գրաւոր եւ բանաւոր քարոզ մը ուղղեց այս առթիւ, հետեւողութեամբ Համայն Ռուսիոյ պատրիարքին:

Նոյնիսկ արտասահմանի մէջ գտնուեցան բարձրաստիճան կղերականներ, որոնք նոյնպէս իրենց պաշտպանութեան տակ առին այս կոչը: Թելադրեցին տարածել եւ ստորագրել, ի հարկին տունէ տուն պտտելով:

Միայն հռոմէական եւ անկլիքան եկեղեցիներուն իշխանաւորները ժխտական դիրք բռնեցին:

Ըսելիքս այս չէր:

Մոսկուայի թերթերը սկսեր են լրացուցիչ լուսաբանութիւններ հրատարակել, աւելի զարկ տալու համար շարժումին:

Այսպէս, «Նոր Ժամանակներ» պարբերականը, որ կը հրատարակուի քանի մը լեզուներով, խմբագրականի մը մէջ կը բացատրէ «խաղաղութեան կուսակիցներուն» եւ «յառաջդիմականներուն» նոր պարտականութիւնները:

Եւ կը յայտարարէ, խօսքն ուղղելով անոնց որ ստորագրած են Ստոքհոլմի կոչը,—Այժմ պէտք է հետեւեալ նոր պահանջները դնել.—

Ոչնչացում զինամթերքի այն պահեստներուն որոնք պատրաստուած են բնակչութեանց զանգուածային ոչնչացման համար:

Ընդհանուր կրճատում եւ իրական հսկողութիւն սպառազինութեանց:

Արգելք եւ լուծարք ամէն տեսակ նախայարձակման եւ զինեալ միջամտութեան:

Վաղը կ'իմանաք մնացեալը, որ շատ աւելի պերճախօս է: ՎԱՀԷ

### ԿԻԼԻԿԻՈՅ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ՄԵԿՆՈՒՄԸ

Ինչպէս գրած էինք արդէն, Կիլիկիոյ կաթողիկոսը իր աթոռը կը վերադառնայ վաղը, հինգշաբթի: Երկու օր պիտի մնայ Մարսէյլ:

Այս առթիւ ողջերթի սեղան մը տրուեցաւ երկուշաբթի օր, նախաձեռնութեամբ Կիլիկեան Միութեան:

ՏԽՐՈՒՆԻ.— Պոլսոյ թերթերէն ցաւով կ'իմանանք թէ Սեպտեմբեր 2ին մեռած է վաղեմի խմբագիր մը, Զարեհ Նէմցէ, որ գլխաւորապէս ծանօթ էր իր անհամար թարգմանութիւններով (մասնաւորապէս վէպեր՝ իբրեւ թերթօն): Ծնած էր 1878ին, Պոլիս: Զաւակն էր ճարտարապետ Պետրոս Նեմցէի եւ եղբայրը հանգուցեալ Գասպար Նեմցէի (նոյնպէս գրող): Գիտէր սահուն ֆրանսերէն եւ հայերէն: Շատ քիչ բան հրատարակած է իր ստորագրութեան տակ, միշտ խուսափելով ցուցամոլութենէ:

### ՄԿՐՏԻՉ ԹՈՔԱԹԼԵԱՆ ՅԱՆԿԱՐԾԱՄԱՀ?

Նիսի մեր թղթակիցը կը գրէ Սեպտ. 18 թուականով.—

Կը լսեմ թէ Պոլսոյ Թոքաթլեան ծանօթ պանդոկի Տէր եւ Տնօրէնը, Պ. Մկրտիչ Թոքաթլեան յանկարծամահ եղած է կիրակի օր: Քանէն ժուան լէ Փէն, իր երբեմնի տեսուչին՝ Պ. Համբիկեանի այցելութեան գացած ատեն, պանդոկին առջեւ կ'իյնայ յանկարծամահ:— Ս.

## Երեք Մեծերու ժողովը

### ԳԵՐՄԱՆԻՈՅ ՎԵՐԱԶԻՆՈՒՄԸ ԱՆԵԼԻ ՄԱՏՆՈՒԱԾ

Երկուշաբթի գիշեր վերջացաւ Երեք Մեծերու ժողովը: Այս առթիւ խմբագրուեցաւ պաշտօնական զեկոյց մը: Կարգ մը ուրիշ խնդիրներու կարգին անլոյծ մնացած է Գերմանիոյ վերազինման հարցը, իբրեւ հետեւանք Ֆրանսայի, Պելժիոյ, Տանըմարքայի եւ Լիւքսէմպուրկի ժխտական ընթացքին:

Ֆրանսայի արտաքին նախարարը Պ. Ռ. Շուման, իր կառավարութենէն նոր հրահանգներ ստանալէ վերջ, վճռապէս պնդեց իր առաջուան տեսակէտներուն վրայ եւ մերժեց գերմանական բանակի մը կազմութիւնը, նոյնիսկ զայն միջազգային միացեալ բանակի մը մէջ առնելու պայմանով:

Արդարեւ, ֆրանսական դահլիճը, Պ. Ռ. Շումանի դիմումին վրայ առջի օր բացառիկ նիստ մը գումարեց, որու ընթացքին անգամ մըն ալ նկատի առնուեցաւ գերմանական բանակի վերակազմութեան խնդիրը, եւ որոշուեցաւ անփոփոխ պահել կառավարութեան նախկին տեսակէտը այս մասին: Փարիզի պետական շրջանակները կ'ըսեն, թէ գերմանական ուժերու վերակազմութիւնը պիտի գրգռէր Խ. Միութիւնը: Ժամանակի ընթացքին այս հարցը կարելի՛ է վերաքննել, բայց որեւէ պարագայի տակ, դաշնակից երկիրներու վերազինումէն առաջ պէտք չէ ձեռնարկել Գերմանիոյ վերազինման:

Ֆրանսական մամուլն ալ, ընդհանուր կերպով կողմնակից է կառավարութեան տեսակէտներուն այս հարցին մէջ: Գերմանական անկախ բանակի մը կազմութեան մասին խօսք չի կրնար ըլլալ — Պ. Էչիսըն ալ ունի այս տեսակէտը — իսկ միջազգային բանակի մը մէջ գերմանական զօրաբաժիններու մասնակցութեան հարցն ալ կարելի է նկատի ունենալ յառաջիկային միայն, կ'ըսեն շատ մը թերթեր:

Գերմանիոյ մէջ ալ տարբեր չեն տեսակէտները: Գերմանացիները իրենք չեն ուզեր անկախ բանակի մը կազմութիւնը: Ընդդիմադիր ընկերվարական կուսակցութեան պետը, Տոքթ. Ք. Շումախըր, առջի օր Շթութկարտի մէջ խօսելով ըսաւ թէ բացարձակապէս հակառակ է Գերմանիոյ անկախ վերազինման: Եթէ գերմանական որոշ ուժ մը պիտի ստեղծուի, ատիկա պէտք է առնուի միջազգային բանակի մը մէջ:

Երեք Մեծերու ժողովի փակումէն առաջ նիստ գումարած էր նաեւ Ատլանտեանի Դաշինքին Խորհուրդը, մասնակցութեամբ 12 արտաքին նախարարներու: Ժողովէն վերջ հրատարակուեցաւ միջանկեալ զեկոյց մը, որ կ'ըսէ թէ Խորհուրդը, երեք օր տեւած աշխատանքներու ընթացքին, խորապէս քննեց հաւաքական պաշտպանութեան ստիպողական հարցը եւ վճռեց գործադրել այդ նպատակին ծառայող բոլոր միջոցները: «Հիմնական հարցերու կարգին եւ կատարուած վիճաբանութեանց ընթացքին քննուեցաւ Եւրոպայի ազատութեան պահպանման համապատասխան միացեալ ուժի մը անմիջական կազմութեան հարցը: Քննուեցան նմանապէս այս ուժի կազմակերպութեան, բաղկացուցիչ տարրերու եւ բնոյթին յարակից խնդիրներն ու ելմտական եւ հում նիւթերու հայթայթման վերաբերեալ հարցեր: Բոլոր նախարարները միակամ խանդավառութեամբ մը ընդունելով տրուած որոշումները, զանոնք պիտի ներկայացնեն իրենց կառավարութեանց, գործադրութեան եղանակը որոշելու համար: Կառավարութեանց այս խորհրդակցութիւնները դիւրացնելու նպատակով, Խորհուրդը յետաձգեց իր նիստերը, բայց ի հարկին, նախագահը կրնայ դարձեալ նիստի հրաւիրել 12 արտաքին նախարարները, յառաջիկայ երկու շաբաթներու ընթացքին»:

Ինչպէս կը տեսնուի, զեկոյցին մէջ ոչ մէկ ակնարկութիւն կայ Գերմանիոյ վերազինման հարցին մասին:

### ՄԱԿԻ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԸ

Երէկ կէսօրէ վերջ բացուեցաւ ՄԱԿի ընդհ. ժողովը Նիւ Եորքի մէջ, զօր. Ռոմուլոյի նախագահութեամբ: Բացումէն անմիջապէս վերջ պահուեցաւ մէկ վայրկեանի լռութիւն աղօթքի եւ ինքնամփոփման համար, ըստ վերջին ընդհ. ժողովի որոշման: Ինչպէս գրեցինք երէկ, ժողովի օրակարգը կը բաղկանայ 73 խնդիրներէ: Բացի հիւլէական ուժի հսկակչռի յաւիտենական հարցէն եւ քսանամեայ խաղաղութեան մը մասին Պ. Թրիկվը Լիի ծրագրէն, պիտի քննուին նաեւ Քորէայի մէջ կատարուած յարձակման շուրջ ներկայացուած բողոքը, համայնավար Չինաստանի մասնակցութեան հարցը եւ այլ բազմաթիւ խնդիրներ: Բոլոր պատուիրակութիւնները Նիւ Եորք կը գտնուին արդէն: Վերջին պահուն միայն կը սպասուի ժամանման Պ. Վիշինսքիի, որ շոգենաւով կը ճամբորդէ:

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

